1917 № 30—ՕԳՈՍՏ.-Ի 6 ԵՐԿՐՈՐԴ ՏԱՐԻ

# ՀԱՄԲԱՒԱԲԵՐ

ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԳՐԱԿԱՆ ԵՒ ՔԱՂԱՔԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

10 կոպէկ — Լոյս է տեսնում կիրակի օրերը — 10 կոպէկ

ԲԱԺԱՆՈՐԴԱԳԻՆԸ տարեկան 4 ռուբլի, կէս տարուան 3 ռուբլի. Արտասահման՝ տարեկան 5 ռ., կէս տարուան 3 ռ.

ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆԸ Թիֆլիս, Արտասարդեան հրապար. № 7. Հեռախօս № 29.

Փոստի հասցէն.— Тифлисъ, „Амбаваберъ", Tiflis, Rédaction du journal «Hambavaber».

ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ՝ տողին 10 կոպէկ.

Խմբագրութիւնը բաց է առաւօտեան ժամի 10—2, բացի կիրակի և տօն օրերից. Տպագրուելու ուղարկուած ձեռագրերը կարող են ենթարկուել փոփոխման և կրճատման:

Տպագրութեան համար անյարմար ճանաչուած մեծ յօդուածները պահւում են վեց ամիս խմբագրատանը, իսկ փոքրերն անմիջապէս ոչնչացւում:

Տպագրութեան համար անյարմար թղթակցութեանց և յօդուածների առթիւ խմբագրութիւնս պարտաւոր չի համարում գրաւոր բացատրութիւններ տալ:

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ



## ՎՏԱՆԳԻՆ ԳԻՏԱԿՑՈՒԹԻՒՆԸ

*Ռուսաստանում այժմ իրերն ու երեւոյթները իրար են խառնուել. անակնկալների մի բացառիկ րոպէ է, որ ապրում է հսկայական պետութիւնը:*

*Երկրի մէկ ծայրից միւս ծայրը տիրող անիշխանութեան ու լքումին առաջն առնելու համար, Նորընտիր կառավարութիւնը վճռել է օգոստոսի 12—14-ը Մոսկուայում կազմակերպել պետական խորհրդակցութիւն, մասնակցութեան հրաւիրելով քաղաքական, հասարակական, ազգային, առեւտրա-արդիւնաբերական և կօոպերատիւ կազմակերպութիւնների ներկայացուցիչներին, բանակների գլխաւորներին, համալսարանների ու չորս պետական դումաների պատգամաւորներին:*

*Խորհրդակցութիւնը պիտի բացուի մինիստր-նախագահի յայտարարութեամբ, որի նպատակն է ժողովականներին ծանօթացնել երկրի դրութեան հետ և պարզել ժամ. Կառավարութեան ծրագիրը. Նրանից յետոյ կը լինի խորհրդակցութիւն:*

*Այս խորհրդակցութիւնը Հիմնադիր Ժողովը կանխող մի բացառիկ բան է, որի անհրաժեշտութեան մասին երկու կարծիք չի կարող լինել:*

*Ամբողջ Ռուսաստանը մի սարսափելի ճգնաժամ է ապրում: Մի կողմից ներքին քայքայում—ժողովրդի տնտեսական և ֆիզիքական կազմալուծումն, միւս կողմից ճակատում գտնուող զորքերի բարոյական արիութեան անկումն և թշնամու ահաւոր սպառնալիքը:*

*Այսպիսի սարսափելի կացութիւնը լուրջ մտահոգութեան պիտի մատնի երկրի բոլոր գիտակից և սթափ տարրերին, ամեն քաղաքացի պիտի լծուի ներքին շինարար աշխատանքի, որպէս զի Ռուսաստանը ճողոպրի անկումից:*

*Ռուսաստանի գիտակից և մտաւորական տարրը դժբաղդաբար մեծաւ մասամբ տարուած է ինչ-որ սին և օդակառոյց քարոզներով: Քարոզներ՝ որոնք նպաստեցին մտքերի պղտորման և յարմար զէնք դարձան թշնամու ձեռքում:*

*Գաղափարական այդ քարոզները ինտերնացիոնալիստական հողի վրայ են դրուած: Ինտերնացիոնալիզմը մի զօրաւոր հոսանքով ողողում է այս վայրկեանիս ռուսական միտքը:*

*«Պատերազմը պէտք է վերջանայ, նա վնասակար ու քայքայիչ մի երեւոյթ է»: Այս է այդ գաղափարախօսների գլխաւոր լօզունգը: Պատերազմի վնասակար մի երեւոյթ լինելու հանգամանքը ոչ ոք չի ժխտում, եթէ նա ծանօթ է նրա սոսկալի հետեւանքներին ու աղէտներին. ոչ ոք չի ժխտում պատերազմի բացասական ազդեցութիւնը: Բայց թէ ինչպէս վերջացնել պատերազմը—այդ մասին է, որ կարծիքների տարբերութիւն է տիրապետում:*

*Այս պատերազմը առաջ եկած է տեւտոն ցեղի տիրապետական տենչանքներից: Գերմանական իմպերիալիզմի անյագ ախորժակների արդիւնք է ներկայ համաշխարհային եղեռնը:*

*Դաշնակիցները ասպարէզ իջան զսպելու այդ մարդակուլ*

ախորժակները, նրանք ասպարէզ իջան մի շարք ազատամիտ և արդարացի խոստումներով, որ նրանք արեցին փոքր և ճնշուած ազգերի ազատագրութեան համար։ Գերմանական իմպէրիալիզմը իր չորսամեայ մղած արիւնալից կռւում հազար ու մի փաստերով ապացոյց տուեց, որ նա ոտնակոխում է մանր ազգերի իրաւունքները, որ նրա համար միայն մի սկզբունք գոյութիւն ունի բոլոր միւս սկզբունքներից բարձր ու տիրական. այդ սկզբունքն է՝ «Գերմանիայ կայսրութեան գերիշխանութիւնը ցամաքի և ջրի վրայ»։

Այդ սկզբունքը թշնամին նուիրագործեց արեան հեղեղով ու երկիրների աւերածութեամբ։ Գերմանիան կոխոտեց Բելգիային, խորտակեց շէն ու հարուստ քաղաքները, խաղաղ բնակչութեան իրաւունքները՝ Ֆրանսիային տիրելու համար։

Գերմանիան միացած Թիւրքիոյ, եղբայրացած ժադեմի այդ արիւնուշտ և բարբարոս ցեղին՝ կոտորել տուեց հայերին, բարուքանդ արեց շէն ու փարթամ Հայաստանը՝ ազատ ճանապարհ բանալու համար դէպի Կովկաս և դէպի Միջագետք։ Նոյն միթոդը թշնամին իրագործեց Սերբիոյ, Չերնոգորիոյ մէջ, կոխոտելով նրանց տարրական իրաւունքները։

Իսկ այս բոլոր փաստերն ու երևոյթները տեսնելուց յետոյ ռուս գաղափարախօս ինտերնացիոնալիստները կատարեալ սառնասրտութեամբ ժխտում են գերմանացիների մեծ պատասխանատուութիւնը և քարոզում անպատիժ թողնելով նրան հաշտուել նրա հետ։

Դեռ աւելին. ռուս գաղափարախօսները աչք են գոցում թշնամու կատարած սարսափների հանդէպ մեր հայրենիքում, նրա գրաւած անհագին տարածութեան հողերի ու երկրների վերաբերմամբ. այդ բոլորի հանդէպ նրանց խիղճը հանգիստ է, նրանց խիղճը հանգիստ կլինի նաև այն ժամանակ, երբ թշնամու յաղթական բանակները մուտք կը գործեն Պետրոգրադ, կը խեղդեն մեր մտաւոր ու քաղաքական կեդրոնը և մեզ համար խիստ նուաստացուցիչ պայմաններով դաշն կը կապեն մեզ հետ...

Ինտերնացիոնալիստական շարժման պատգամախօսների շարքում յիշատակեցին նաև ռուս մեծանուն գրող Մ. Գորկուն և այդ առթիւ անհագին վէճ բարձրացաւ ռուսական մամուլում Բուրցևի և Գորկու միջև։

Գորկին իր օրգան „Новая Жизнь“ թերթում միշտ արծարծում է այն համաշխարհային մտքերը, որ նա 25 տարիներից ի վեր գրել ու քարոզել է իր գեղարուեստական ու այլ գրուածքների մէջ։

Մ. Գորկին նոր չէ որ հակառակ է դառնում պատերազմին. նա վաղուցուայ սոցիալիստ է, աշխատաւոր զանգուածի եռանդուն պաշտպան։

Որպէս ինտերնացիոնալիզմի և հակապատերազմի պատգամախօս՝ նա մաքուր է և համոզուած։ Նրա գաղափարները բղխում են կուռ համոզմունքից և դատողութիւնից։

Բայց ռուսական անգիտակից հասարակութեան շարքերում Մ. Գորկու արծարծած մտքերը մեծ հոսանք են ստեղծել և ազդել ժողովրդի հայրենասիրական ոգուն և պատերազմական եռանդին։

Այդ ազդեցութիւնն է ահա որ մեզ թւում է յոռի և կործանարար։ Կարող է մէկը բարձր գաղափարներ և համոզմունքներ ունենալ, ինքն էլ գնահատելի ու մեծարանքի արժանի մի անձնաւորութիւն լինել, բայց հասարակական, երկրի քաղաքական շահերի տեսակէտից վտանգաւոր ու աղէտաբեր լինել։

Ռուսաստանի ներկայ տագնապը իր սկզբնաւորութիւնն առնում է երկրի և ժողովրդի ամեն խաւերից, որովհետև բոլոր խաւերն էլ անկայուն են դարձել այժմ, երերուն ու անկազմակերպ։

Մեզ մօտ Կովկասում մանաւանդ ժողովուրդների փոխյարաբերութիւնների բնոյթը աւելի վտանգաւոր և սպառնալից պէտք է համարել։

Քրդական շարժումը կամաց-կամաց սկսում է լայն ծաւալ ստանալ։ Ասում են, որ մեծ քանակութեամբ սպառազինուած քրդերի վոհմակները Տաճկաստանից անցել են այս կողմը և տեղական քրդերի հետ միանալով ասպատակում են խաղաղ բնակչութիւնը։

Քրդական այդ շարժումը, որ առայժմ երևոյթապէս «աւազակային» հանգամանք ունի, քաղաքական և ռազմական մի ծրագրի իրագործման ծառայող վտանգաւոր շարժում է։

Զինուած քրդերի խմբերը թիկունքում և ճակատում իրենց անպատժելի սխրագործութիւններով ճանապարհ են բաց անում թրքական բանակին։ Նրանք զինուած են գերմանական կատարելագործուած զէնքերով և նրանց մեծ մասը տաճկահպատակ են։

Թիւրք և գերման կառավարութեանց ծրագիրն էր մաքրել Տաճկաստանը քրիստոնեայ ազգաբնակչութիւնից։

Նրանք հասան այդ նպատակին. առաջին անգամ կոտորեցին հայերին, ապա յոյներին և միւս ոչ-իսլամ ազգութիւններին։

Թիւրքերը ձգտում են տիրապետել նաև Կովկասին, իրենց իշխանութիւնը տարածելու համար Կովկասեան լեռներից մինչև արաբական ծովը և Բիւզանդիոնից մինչև Հնդկաստան։

Նրանց նպատակն է միացնել և համախմբել մահմեդական բոլոր ցեղերը և ստեղծել իսլամական հզօր կայսրութիւն։ Ասիոյ մէջ օսմանեան կառավարութեան հետապնդած այդ նոյն ծրագիրը, Գերմանիան հետապնդում է Եւրոպայում։

Օսմ. կառավարութիւնը նուաճողական այդ ծրագիրն իրագործելու համար փորձեց գրաւել Կովկասը, բայց չը յաջողեցաւ։

Այժմ Ռուսաստանի ներքին կազմալոյծ վիճակը պատեհ առիթ է տալիս օսմաններին իրենց նպատակը իրականացնելու։

Քրդական շարժումը նախապատրաստական քայլն է այդ ծրագրին. դա քաղաքական և ռազմական մի շատ վտանգաւոր և թագուն նպատակի ազդանշանն է։

Հարուածը բնականաբար, ինչպէս միշտ, այս անգամ էլ հայերիս ուղղուած է և մեզմէ կսկսի։

Եթէ պատռեց կովկասեան ճակատը, թիւրքական արիւնոտ դաշոյնը, իրեն հետ զուգորդելով ուրիշ պատրաստի և կատաղի սուրերը՝ հայ ժողովրդի դիակների վրայով ճանապարհ բաց կանի մինչև կովկասեան լեռնաշղթան։

Օսմանեան կառավարութեան այդ ծրագրում, միայն հայերի բնաջնջումը չէ արձանագրուած. Կովկասեան միւս քրիստոնեայ ցեղերն էլ հաւասարապէս պիտի ենթարկուեն այդ վիճակին։

Միայն թէ ծրագիրը իրականացնելու մի մաքիավէլական և խորամանկ միջոց ունի թիւրք կառավարութիւնը. այդ միջոցն է՝ առերես բարեկամութիւն ցոյց տալ միւս քրիստոնեայ ցեղերին և յաջորդաբար կոտորել. ինչպէս Տաճկաստանում նախ առերես բարեկամ ձևացաւ յոյներին և հայ ժողովուրդը կոտորելուց յետոյ, սկսեց կոտորել նաև յոյն ժողովուրդը։

Մեր դրացի վրացիները թող այնքան միամիտ չըլինեն հաւատալու ճարպիկ և շողոք խաղերին։ Կովկասի գրաւումը հայերի դիակներին պիտի աւելացնէ նաև իրենց դիակները։

Համիսլամութեան ծրագիրը բացառութիւն չի ճանաչում և

եր՛ոյթական խոստումները չեն կարող ծածկել Թիւրքիոյ թագուն նպատակները։

Այս զարհուրելի ապագան մեզ պէտք է գտնէ ազգային մի զօրաւոր ներքին աշխատանքի առջև։ Կովկասցիները պէտք է փրկեն իրենց ճակատագիրը։

Մենք պէտք է ապացուցանենք վտանգին կարևորութիւնը, որպէս զի զօրքը ամուռ կառչի ռազմաճակատում և կառավարութիւնը հաշուի առնի իրերի ծանր դրութիւնը։

Ամենից առաջ քրդական շարժումը պէտք է խեղդել, ինչպէս օձը իր բոյնին մէջ։ Վերջ տալ աւազակութիւններին և սանձարձակ տարրերին։ Խաղաղ բնակչութեան պատեհութիւն տալ ինքնապաշտպանութեան և խաղաղութիւնը պղտորող իւրաքանչիւր փոքրիկ քայլը, խորտակել իր սկզբնաւորութեան մէջ։

Այդ բանին պէտք է ձգտեն երկրի բոլոր տարրերը, որովհետև բոլորին էլ հաւասարապէս վտանգ է սպառնում։

Ռուսաստանում գիտակցում են վտանգը և Մոսկուայի մէջ շտապում գումարել մի խորհրդակցութիւն։ Կովկասի ժողովուրդներն էլ պէտք է խորհրդակցութիւն կազմեն Կովկասի խաղաղութեան և ապահովութեան համար։

Առանձին խորհրդակցութիւնը Կովկասի համար կարևոր է այն տեսակէտից, որ Կովկասը առանձին պայմանների և դրութեան մէջ է ապրում, հեռու է Ռուսաստանից և միայն ինքն կարող է ըմբռնել իր վէրքերն ու նրանց դարմանը գտնել։

Անդրկովկասեան ժողովուրդների խորհրդակցութիւնը կարևոր և այժմէական մի խնդիր է Կովկասին սպառնացող վտանգին դիմագրաւելու համար։

Մենք վստահ ենք, որ Կովկասում ապրող բոլոր տարրերի և խաւերի անկեղծ հայրենասիրութիւնն ու աչալրջութիւնը կարող է փրկել մեր երկիրը։

Ծ. Թորգոմեան

# ԳՐԱԿԱՆ ԱԿՆԱՐԿՆԵՐ *)

Մի՞թէ, իսկապէս, Ռուսաստանի ժողովուրդը չունէր փրկութեան մի երրորդ ճանապարհ։ Նրան պէտք էր ուրեմն կամ բռնակալի գաւազան և կամ անիշխանութեան խայտառակութիւն։ Իրաւացի՞ էր ուրեմն Կերենսկին, երբ կանչում էր զայրալիր—«Ազատ քաղաքացինե՞ր էք դուք, թէ՞ ապստամբ ստրուկներ»...

«Ապստամբ ստրուկներ»... կա՞յ աւելի անարգական մի բառ՝ նուիրած այնպիսի անարգ վարմունքի դէմ, որ վերջերս ըսպառնում է քարուքանդ անել ամբողջ Ռուսաստանը և նրա ձեռք բերած այնքա՜ն շքեղ, այնքա՜ն իդէալական ազատութիւնները ջընջելու..

Մաքսիմ Գորկին, սրանից մի տարի առաջ գտնում էր, որ ռուս ժողովրդի մէջ կայ «երկու հոգի»—Եւրոպական և Ասիական, որ այդ երկու հոգիները խառնուած են ռուս ամբոխի վարմունքների մէջ և նրանք են ղեկավարում ամեն ինչ։

«Էհ, բայց—կանչում է յօդուածագիրը—ո՞րն է Եւրոպական այդ հոգու մէջ, ո՞րն է խառնուրդը գոնէ։ Ուշադրութեամբ ձեր շուրջը նայեցէք, կարդացէք լրագիրները, զննեցէք այն, ինչ կատարւում է բանակում, գիւղերում, մինիստրների առանձնասենեակներում, գործարաններում և կոմիսարիատներում...

Զննեցէք և ասէք մեզ—ո՞ւր է Եւրոպական ոգին։ Չէ՞ որ ամեն ինչ Ասիական է միայն և զուտ Ասիական... Ամեն բան և ամեն ինչ վերջերս Ռուսաստանում, բոլոր դասակարգերն ու դասերը, բոլոր ազգերն ու հաստատութիւնները սիստեմատիք կերպով ու կանոնաւորութեամբ քայքայւում են ու խայտառակութեան մէջ ընկնում»։

Յիրաւի, առաջ գոնէ սահմանափակ շրջանների, որոշ խմբակների մէջ էր տեղի ունենում խայտառակութիւններ և այն՝ փոքր ի շատէ գաղտագողի, փոքր ի շատէ անհամարձակ և գողունի։ Իսկ այժմ։ Այժմ—կեցցէ ազատութիւն և հաւասարութիւն—այժմ գողերն ու շահագործողները վխտում են շուրջդ յանդըգնօրէն և համարձակ. քեզ կողոպտում են այժմ ամենքը—և՛ կառապանը, և՛ բանուորը, և՛ հրատարակիչները, և՛ միլիցիոնները»։

Առաջ Ռուսաստանի մէջ համեմատաբար քիչ էին դատարկապորտների խմբակները, որոնք պարազիտի պէս գերանում էին աշխատաւորի արիւնով։ Իսկ այժմ թափառում են (և սակայն ամենքից աւելի լաւ են ապրում) կարծես ամենքը—թէ զինուորականը, թէ բանուորը, թէ անյայտ է ինչ գործով՝ միտինգից—միտինգ թափառող մինիստրները, այլ և համագումարներ կազմող ու վճիռներ կայացնող գիմնազիստները։

...Կեցցէ ռամկավարական հանրապետութիւնը. շատ լաւ, հիանալի, բայց ինչո՞ւ օդը ճնշիչ է այսքան, ինչո՞ւ թախիծը խեղդում է մեզ և ամօթը սեղմում է մարդու կուրծքը Ռուսաստանում։

«Ծայրից-ծայր, Սպիտակ ծովից մինչև Սև ծովը, նախկին ռազմաճակատից մինչև հեռաւոր Արևելքը՝ միլիոնաւոր մարդիկ կարծես զբաղուած են միմիայն խայտառակելով մեր երկիրը։ Խայտառակում են իրենք—իրենց՝ ազգեր ամբողջ։ Ռուսաստանի վրայ ծիծաղելու են ելել Ֆինլանդիան, Ուկրայինան, ահագարանքով զինւում է Կովկասը, տենդային արագութեամբ շտապում են բաժանուել մինչև իսկ Շլիսէլբուրգն ու Կոստրոման։ Ո՞ւմ է հերթը այժմ, անջատուելու և քայքայելու երկիրը—հարցնում է յօդուածագիրը։

«Նոյն կերպով, սիստեմատիքաբար—շարունակում է Վասիլևսկին, նոյն եռանդով քայքայման գործին ույժ են տալիս և խորտակում են նաև դասային խմբերը։ Բանուորական շերտերը, սոցիալիզմի գաղափարախօսութիւններն միմիայն իւրացրել են կարծես՝ «գրպանը հնար եղածին չափ շատ ուռցնելու» (въ карманъ то, въ карманъ норови поболѣ) մտածութիւնը։ Բանակը ոչ միայն չի ուզում այլևս քաջարի լինել, այլ մինչև իսկ գարեջուր խմելու է գնում գերմանական խրամատների մէջ, տալիս է միլիոնաւոր դասալիքներ, ջարդ ու փշուր է անում գնացքներ և սպանում կայարանապետներին... Աւելի հեռուն, գիւղացիները, որոնք շատ լաւ գիտեն թէ ի վերջոյ հողերը իրենց պիտի անցնեն, բայց որոնք չեն ուզում սպասել Օրէնսդիր Ժողովին, ագահօրէն կողոպտում են և ոչնչացնում կալուածատէրերի տները, ջարդում հայելիներ և դաշնամուրներ... Նոյն չափով և խայտառակութեան մէջ են հաստատութիւնները... Ահա այդ թղթատացող, մոլորուած և ողորմելի կոմիսարիատնե՛րը և ժամանակաւոր կոմիտէնե՛րը... Ահա այդ բոլոր տեղական բանուորական պատգամաւորութեան խորհուրդնե՛րը, որոնք հասել են ցենզուրութեան փառքին և գըրաւելու են ելնում ոչ միայն իրենց անդուրեկան թերթերը, այլ մինչև իսկ տպարանները...

Ապա, վերջ ի վերջոյ երկիւղի մէջ տապլտկող ազգայնականութիւնը, որ առանց բացառութեան և վախից՝ ձևացնում է ինքզինքը ոչ միայն հանրապետական, այլ շատ թունդ սոցիալիստ և սոսկում է իր ներքին, սրտի ներքում խօսող «ես»-ի արտայայտութիւններից... Իսկ միւս կողմից՝ ապա այն հսկայ և բազմամիլիոն անգրագէտ և տգէտ Ռուսաստանը, որ այնքան յիշեցնում է իսկական սկիւթացիներին ու XII դարի վայրենիների խումբը!»...

*) Տես «Համբաւաբեր» № 29։

Խիստ, շատ խիստ է Վասիլեւսկին։ Դաժանօրէն խիստ և տըխրօրէն ճշմարիտ։ Զարհուրելի Թախիծն ու գայրոյթի խառնուրդը միայն կարող է լինել այնքան կծու՝ այն խայտառակութիւնների դիմաց, որոնց ենթակայ է այժմ այս ամբողջ լայնածաւալ երկիրը և որոնք փլուզումի ահեղ տեսարանն են պատկերացնում ամէն հայրենասէրի համար։ Եւ կարելի՞ է արդեօք չը դառնանալ այնքան, վերջ ի վերջոյ չասելու համար մինչեւիսկ այսպիսի կիզիչ խօսքեր.—

«Ի՞նչ է, քայքայե՞լ էք ուզում, գոնէ հերթով արէք պարոններ, հերթով. Ի՞նչ էք միանգամով բզքըտելու եկել Ռուսաստանը, կարգո՛վ կանգնեցէք, հերթ պահպանեցէք, գոնէ մի անգամ կարգ ու կանոնո՛վ գործէք, կարգ ու կանոնով քայքայեցէք։ Ո՞վ է առաջինը—բանուորնե՞րը։ Սպասեցէք դեռ, ընկերնե՛ր, բանակը դեռ չի վերջացել ինք-զինքը խայտառակելուց... «իսկ եթէ բան է, յիրաւի, հերթ պահպանել չէք ուզում և շտապում էք—կա՛յ ուրիշ միջոց եւս։ Կարելի է գնալ ու ներողութիւն խնդրել Նիկոլայ Ռոմանովից և աղաչել, որ նորից իր գահը բարձրանայ... կարելի է խղճայ և ընդունի ամենողորմածաբար... «Ձերդ Կայսերական Բարձրութիւն... ողորմած եղէք... Ձեր ոտքն ընկած՝ համարձակւում ենք աղաչել... ներեցէք մեզ—կատարեալ տխմարներիս։ Սըխալ գործեցինք։ Մենք կարծում էինք թէ սիրում ենք ազատութիւնը։ Անիծուած թող լինի նա—այդ ազատութիւնը։ Ի՞նչ պէտք է նա մեզ, ի՞նչ մեզ վայել բան է։ Մեզ—Ասիացիներիս պէտք է միայն Թագաւո՛ր, նոյն իսկ փարաւո՛ն՝ պրիստաւներով, ժանդարմներով, գաղտնի ոստիկաններով ու դահիճներով։ Այն ժամանակ ահա կարգը կը վերականգնուի, բանակը կը կարգաւորուի, արդիւնագործութիւնն էլ կը լինի, բանուորն էլ, Ռուսաստանն էլ կապրի... Ձերդ Կայսերական Մեծութիւն, ողորմած եղէք, հրամայեցէք կառավարելու Ռուսաստանը և մեզ, տխմարներիս, խելք սովրեցնելու»...

Ի՞նչ աւելացնել այս ամենի վրայ։ Հարկ կա՞յ այլեւս բացատրութիւնների և որ և է խօսքի այսքան պերճախօս գայրոյթի և դառնութեան առաջ...

Վ. ՓԱՓԱԶԵԱՆ

(ՎԵՐՋ)

## ԹԻՖԼԻՍԻ ՔԱՂՔ. ԴՈՒՄԱՅԻ ԸՆՏՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ

Վերջապէս երկար պայքարներից յետոյ կայացաւ քաղաք. իրաւասուների ընտրութիւնը։ Ընտրութեան արդիւնքը հետեւեալն է

№ 1 ցուցակը (սոցիալ դեմոկրատ կուսակցութիւն) ստացել է 39,498 ձայն, 50 տեղ։ № 2 ցուցակը (վրաց ազգ. դեմոկր. կուսակց.) ստացել է 2992 ձայն, 4 տեղ։ № 3 (սոց.-յեղափոխ. կուսակց.) 15 642 ձայն, 20 տեղ։ № 4 (Հայ Յ. Դաշնակցութիւն) 18.221 ձայն, 24 տեղ։ № 5 ցուցակը՝ (վրաց ֆեդերալիստներ) 3176 ձայն, 4 տեղ։ № 6 ցուցակը՝ (Նաւթլուղի քաղաքամաս) 177 ձայն։ № 7 ցուցակը՝ (Ժողովրդ. Ազատ. և Հայ Ժողովրդ. կուսակց) 5214 ձայն, 7 տեղ։ № 8 ցուցակը՝ (բոլշեւիկներ) 5245 ձայն, 7 տեղ։ № 9 ցուցակը՝ (հրէաների) 1033 ձայն, 1 տեղ։ № 10 ցուցակը (Հնչակեաններ) 345 ձայն, ոչ մի տեղ։ № 11 ցուցակը՝ (մահմեդականներ) 1934 ձայն, 2 տեղ։ № 12 ցուցակը՝ (Դիդուբէի քաղաքացիներ) 48 ձայն։ Ընդամենը՝ 92,000 ընտրող և 120 իրաւասու։

Ըստ ազգութեան՝ ձայնաւորները ստորաբաժանւում են այսպէս. հայեր՝ 48, վրացիներ՝ 39, ռուսներ՝ 27, մահմեդականներ՝ 4 և հրէաներ՝ 2։

## ԱՆԷԾՔ ԵՒ ՕՐՀՆՈՒԹԻՒՆ

Չորս մեծ գետերը հանդարտ հոսում էին Եդեմի միջից, և մերթ ախուր մանչոցով, մերթ ուրախ կարկաչիւնով առաջ էին ընթանում։ Երկինքը տարածել էր իր կապոյտ կամարը. գիշերները լուսինը, աստղերի հետ պար բռնած՝ իր կաթնագոյն լոյսը տարածում էր այնտեղ. փայլփլում, ցոլացնում էր դրախտի գեղածիծաղ լճերի վէտ-վէտ ալիքները, գետերի ծփծփուն կոհակները, ցերեկին արեգակը իր պայծառ կենդանացուցիչ ճառագայթները առատօրէն սփռում էր ամէն տեղ և կեանք տալիս դաշտ ու հովիտին, լեռ ու ձորերին, ուր աճում էին խոտ ու կանանչ, ծառ ու ծաղիկ, և ամպերը թափում էին մարգրիտ անձրեւներ, զովացնում էին դրախտի բոյսերին, որոնք ծաղկում, փթթում, զարդարւում էին գեղեցկութեամբ։ Պճնւում բազմագոյն անուշահոտ ծաղիկներով, մեղմիկ զեփիւռը միշտ շոյում, համբոյրներ էր տալիս դրախտի երանութեան ծաղիկներին, և անուշ բուրմունքը տարածում չորս կողմը։

Թռչուններն այնտեղ անհոգ և ուրախ քաղցր դայլայլով երգեր էին հիւսում, պախրէն ու այծեամ մագլում էին լեռն ու ձոր։ Մեղուները մեղմիկ բզզոցով մեղր էին հաւաքում, վայրի գազա՛նները բարձր լեռներում, խոր անտառներում ազատ թափառում և երկնակամարի վրայ թեւածող արծիւները խրոխտ հայեացքներ էին բեւեռում ամենուրեք։

Արարչագործութեան վերջին ձեռագիրը—մարդը, որ ներշնչուած էր Արարչի շնչով և որին հրամայուած էր իշխել բոլորի վրայ՝ դատապարտուած «քրտամբ ճակատի» անէծքին՝ ճգնում էր այնտեղ, քրտինք էր թափում, ստեղծագործութեան թերինները ինքը լրացնում և Արարչագործի անուան նուիրուած տաճարներում երկիւղածութեամբ փառաբանում Ստեղծողին, խունկ էր ծխում Նրան, և Նրա աղօթքները խառնուելով դրախտի թռչունների գեղգեղանքին, ջրերի կչկչոցին, բարձրանում էր դէպի վեր, դէպի յաւիտենական աշխարհը, ուր հրեշտակները այդ փառաբանութիւնները տանում մատուցանում էին Արարչին։

Աստուած լսեց աղօթողների ձայները, հոտոտեց դրախտի բուրմունքը, գոհունակութեամբ շոյեց սպիտակ մօրուքը, ծափ զարկեց, կանչեց սպասաւորող սերովբէներին ու հարցրեց.—Որտեղից են գալիս այս գեղեցիկ երգերի սքանչելի ձայները, այս հոգեզմայլ փառաբանութիւնները, այս անուշահոտ բուրմունքը։

—Տէ՛ր, պատասխանեցին հրեշտակները, քո ստեղծած Եդեմից, քո քանդակած դրախտից։

Տիրոջ դէմքը այն ժամանակ կնճռոտուեց, խոժոռ հայեացքը սեւեռեց երկիւղածութեամբ սպասաւորող հրեշտակներին և զայրացած գոչեց.

—Ես այդ դրախտը անիծել եմ, ես հրամայել եմ երկինքին, որ կապոյտ կամար կապի Նրա վրայ, արեւին ու լուսնեակին՝ որ հերթով լուսաւորեն, աստղերին՝ որ գիշերները զարդարեն Նրա ջինջ երկնակամարը։ Պատուիրել եմ չորս մեծ գետերին, որ միշտ հոսեն և ոռոգեն Նրա լեռներն ու դաշտերը, հողին՝ որ միշտ կանանչով ծածկուի, դաշտերը զարդարուեն ծաղիկներով, լեռն ու ձորը անտառներով։ Ես ասել եմ ամպերին, որ շարունակ ցողեն, զովացնեն նրանց. զեփիւռին՝ որ միշտ սլանայ, շոյէ, փայփայէ իմ ստեղծած զարդարանքներին, որպէս զի նրանք չը դալկանան, չը թոռոմին։ Ես թոյլ եմ տուել գազաններին, թռչուններին, անբան անասուններին այնտեղ ապրելու, զուարճանալու. բայց ես խստիւ արգիլել եմ, որ Ադամորդին այնտեղ լինի ուրախ, երջանիկ, երգող ու փառաբանող. Նրա բաժինը պի-

տի լինի միայն քրտինք ու արցունք և դրա համար ես այդ երկիրը շրջապատեցի չար և անգութ դրացիներով. այնտեղ ուղարկեցի իմ անէծքի գործիքները—Ճինգիզ-խանին, Լէնկթիմուրին, Ալփասլանին, Շահապասին, արաբացիներին։ Ասիոյ խորքերից այնտեղ բերի կործանող, քանդող մոնգոլներին և վերջապէս կարմիր Աբդուլ-Համիտին։ Եւ մի՞թէ նրանք չը կարողացան բնաջինջ անել այնտեղ բնակուող մարդկանց, մի՞թէ քարուքանդ չարին նրանց կերտուածները, հիմնայատակ չարին նրանց եկեղեցիներն ու տաճարները։ Այժմ իսկ թող գնա Սաղայէլը, մտնի իմ ծառայ Վիլհէլմի, Թալէաթի, Էնվէրի սիրտը, թող նրանք դառնան իմ զուլումի գործիքները, շարունակեն աւերումի ու քայքայումի գործը, թող քանդեն տաճարները, քար քարի վրայ չթողնեն ամեն ինչ, թող ջնջեն այնտեղից իմ անունը փառաբանողներին, որովհետև ես անիծել եմ նրանց։

Սաղայէլեան սև գունդը սաւառնեց դրախտ երկրի վրայ, աստղերը դողդողալով թագ կացան մութ ամպերի տակ, ծուխը բարձրացաւ, արևի լոյսը ծածկուեց, լուսինը կարմրեց, դրախտի չորս մեծ գետերը արիւն դարձան և իրենց կարմիր յորձանքների հետ քշեցին տարան մարդկանց, կանանց ու երեխաների դիակները։ Թռչունները սրտաճաք եղած փախան այնտեղից, կռունկների երամները շատ բարձրից, տխուր կռռոցով չուեցին հեռու, արագիլները տեղ չը գտան բոյն շինելու. մնացին օձերը, սև ագռաւները, գիշակեր գազանները մութ անտառների, խոր ձորերի մէջ դիակներ յօշոտելու։

Փառաբանութեանց փոխարէն՝ անէծքի, լացի ու կոծի ձայն, խնկի փոխարէն՝ գարշահոտութիւն բարձրացաւ. Տիրոջ աթոռին և Բարձրեալի դէմքը նորից կնճռոտուեց։ Նա կրկին կանչեց սերովբէներին.

—Այս ձայներն ու գարշահոտութիւնը ինձ հանգիստ չեն թողնի, ո՞րտեղից են նրանք։

—Քո սիրած Եդեմից, Տէր, Քո զարդարած դրախտից, որի բնակիչները փշրեցին իրենց աստուածներին, քանդեցին նրանց մեհեանները ի սէր Քո միածին որդու, նրա համար տաճարներ կառուցին, ու փառաբանում էին Քո և որդւոյդ անունը, սակայն դա Քեզ հաճելի չը թուաց, Տէր, այժմ սաղայէլը քանդում, կործանում է Քո ստեղծած գեղեցիկ դրախտը... Տէր, Դու մոռացել ես Եդեմի բարձր սարի վրայ ջրհեղեղից ազատուած Քո ծառայ Նոյին արած խոստումդ, Քո օրհնութիւնները որ տուել ես նրա որդոց ու ժառանգներին, քո օգնութիւնը Գրիգորին, Տրդատին. Քո փառքն ու շնորհքը Մեսրոպին, Քո ուժը Մամիկոնեան իշխաններին, որոնք երկար ժամանակ պայքարեցին սուրբ անունդ բարձր և տիրական պահելու համար։

Տէրը կիտեց յոնքերը, մի րոպէ լուռ մտածեց և ապա հարցրեց.

—Դրախտի որդիները արդեօք դիմադրե՞ւմ են իրենց վրայ եկած փորձութեան և չարիքներին, յիշո՞ւմ են իմ ծառայ Պօղոսի բերանով ասուած «զի զով սիրէ Տէր,—տանջէ». կատարո՞ւմ են արդեօք Մովսէսի միջոցաւ հրամայուած «ակն ընդ ական» օրէնքը՝

—Այո՛, Տէր, լսիր. արտասուքների միջից գոհաբանութեան ձայներ են գալիս և տես, Կովկասի լեռներից մինչև Տաւրոսի շղթան, Սև ծովից մինչև Միջերկրական՝ ինչպէս անէծքի զուլումի գործիքները փշրուած, թափուած են, նայիր և տես, որպիսի դիւցազնութեամբ կռւում են դրախտի վիրաւոր, արիւնոտ զաւակները. գալարումների մէջ անգամ փաթաթւում են և խեղդամահ անում չարագործներին։

—Տէր, մեծ է Քո բարկութիւնը, բայց աւելի շատ է Քո գթութիւնը, աւելի հզօր են Քո օրհնութիւնները որ տուել ես Եդեմի բնակիչներին և Քո անէծքները անզօր են Քո գթութեան, օրհնութեան և մանաւանդ Քո աստուածային սիրոյ դէմ, որ ունիս դէպի դրախտն ու իր հարազատ զաւակները...։

Տիրոջ դէմքը զուարթացաւ, պայծառ լոյսը պարփակեց Նրա ալեհեր գլուխը, Նա խորասուզուեց մտքերի մէջ և մի մեղմ ու պարզ ժպիտ անցաւ Նրա պատկառելի դէմքի վրայ, իսկ սպասաւորող սերովբէները սկսեցին երգել «Ովսաննա՜ ի բարձունս...»։

Արէլ

# ԲԾԱՒՈՐ ՏԻՖԸ

(Tyfhus exanthematicus)

Քաղաքների Միութեան գերեզմանատունը շրջելիս՝ առանձին անձկութեամբ կարդալով տապանաքարերի վրայ, «մեռաւ բծաւոր տիֆից բժիշկ այսինչը, այսինչ ժամանակ», սրտի առանձին կսկիծով յիշեցի իմ սիրելի ընկեր բժիշկ Վահան Գէորգեանին և Սարիղամիշի № 1 հիւանդանոցի ամենից յարգուած գլխաւոր բժիշկ Կարապետեանին, որոնք անցեալ տարի զոհ գնացին բծաւոր տիֆին։

Չը նայելով իր ահաւոր բնոյթին, բծաւոր տիֆի մասին շատ աւելի քիչ է խօսուել, քան ինչպէս նա արժանի է, սակաւ է գրաւել առանձնապէս մեր ուշադրութիւնը, որովհետև առիթ չենք ունեցել ճանաչել նրան։

Նոյնիսկ այն երկրներում, որտեղ նա գործել է մեծ աւերածութիւն, չեն ճանաչել նրա իսկական անունը և յաճախ շփոթել են ժանտախտի, աղիքային (ab domlnolis recurrens) այսինքն վերադարձ տիֆի հիւանդութիւնների հետ, կամ զանազան անուններով են որակել նրան (սովի տիֆ, պատերազմի տիֆ, պետեխիական տիֆ), իսկ ամերիկացի բժիշկները «Բրայլի հիւանդութիւն» էին կոչում նրան։

Թէև արդէն 16-րդ դարում Ֆրակաստորիւսը բաւականին մանրամասն տուել է այս հիւանդութեան նկարագրութիւնը, երբ Լոտրեկի բանակից 30 հազար զինուոր շատ կարճ ժամանակում զոհ գնացին այս սոսկալի հրէշին։ Մինչև ներկայ պատերազմը՝ նա մօտաւորապէս այնքան է հետաքրքրել մեզ, որքան տաք երկրների բէրի-բէրի, տէնգէ և այլ հիւանդութիւնները։

Իմ տեսածներից, լսածներից և կարդացածներից գոնէ ես այն համոզման եմ եկել, որ եթէ բժիշկները նոյնքան մեռնէին ուրիշ հիւանդութիւններից (իրենց պաշտօնը կատարելիս), որքան բծաւոր տիֆից են մեռնում, այլևս բժիշկ չպիտի մնար աշխարհի երեսին։ Բծաւոր տիֆի պատկերը բնորոշելու համար բերենք մի քանի օրինակներ։

Ռուսաստանում 1900—8 թ. բծաւոր տիֆով հիւանդացել են՝ մօտ 575,000 մարդ և մեռել՝ 42,000։

Ռուս-տաճկական պատերազմում 1877—78 թ. հիւանդացել են տիֆով՝ մօտ 200,000 մարդ, որից մեռել են՝ մօտ 44,000-ը (այս թուերի մէջ են մտնում և տիֆով ու պարատիֆով հիւանդներ). մինչդեռ կռուի դաշտում սպանուել են մօտ 35,000-ը միայն։ Սերբիայում ներկայ պատերազմի սկզբում, գրեթէ մի տարուայ ընթացքում, 48,000 մարդ զոհ գնացին այս հրէշաւոր հիւանդութեան։ 350 բժշկից մեռան 120 հոգի։ Նոյն թուին Սամարայում հիւանդացան 11 բժիշկ, որից մեռան 5։ 1908 թ., երբ համաճարակը խիստ չէր, Ռուսաստանում մեռան 32 բժիշկ։ Իռլանդիայում 1847 թ. հիւանդացան մօտ 500 բժիշկ, որից մեռան 147 հոգի։

Վարակման նպաստաւոր պայմաններն են. վատ բնակարանը, կեղտոտութիւնը, խիստ չքաւորութիւնը, ֆիզիքական և մտաւոր յոգնածութիւնը, խիտ բնակութիւնը, ինչպէս չքաւոր ընտանիքներում, գիւղերում, խրամատներում, զօրանոցներում, պաշարուած քաղաքներում, զօրաբանակներում և ընդհանրապէս պատերազմի ժամանակ նաև կայարաններում և բանտերում։ Ապա նոր կրած ծանր հիւանդութիւնները, մանաւանդ վարակիչ, ինչպիսիք են աղիքային, վերադարձ տիֆը, արիւնալուծը, խոլէրը և միջատները, գլխաւորապէս ոջիլը։

Պետրոգրադում 9-ամեայ տեղեկագրից երեւում է, որ հիւանդներից 97 %-ը չքաւորներից են եղել, իսկ 3 1/2 %-ը միայն հարուստներից։

Լոնդոնի տեղեկագրին եթէ նայենք, 19,000 բծաւոր տիֆից ամբողջ 97 % տուել է չքաւոր դասակարգը։ Հիւանդութեան և մահացութեան ամենամեծ տոկոսը ոջլոտ ու կեղտոտ մեկսիկացին է տալիս։

Արեւմտեան Եւրոպայում շատ գիտնական կամ բժիշկ ոջլի երես չի տեսել իր կեանքում, բծաւոր տիֆն էլ չի տեսնի, և զարմանալի չէ, որ 5 տարուայ ընթացքում ոչ մի կլինիկայում, կամ պոլիկլինայում, լինի Ֆրանսիայում, Շվէցարիայում, թէ Գերմանիայում, բծաւոր տիֆի երեսը չը տեսայ և ոչ մի անգամ։ Լուսաւոր երկրներում եթէ պատահում են երբեմն ոչ թէ մասնակի դէպքեր, այլ նոյն իսկ համաճարակներ, բայց դրանք առաջ են գալիս ա) աղէտ հարեւանների, բ) երկրի ֆինանսական նեղ կացութեան պատճառով, ինչպէս այդ եղաւ Անգլիայում 1862 թ., ուր 7 տարուայ ընթացքում մօտ 14 հազար մարդ հիւանդացաւ։

Եթէ չեմ սխալւում, բծաւոր տիֆի ամենամեծ համաճարակը Ռուսաստանում եղել է 1908 թ.—104,000 դէպք է պատահել, որից 272-ը միայն Պետրոգրադում։ Այս հանգամանքը կարելի է վերագրել ներքին խլրտումներից առաջացած տնտեսական ճգնաժամին, որպէս արդիւնք 1904—1907 թ. քաղաքական դրութեան։ Ռուսաստանի մի քանի ներքին նահանգներում հիւանդութեան դէպքերն ընդհանրապէս մարտ ամսին է լինում, երբ ցորենի պաշարը արդէն սպառած է լինում և գիւղացիները շատ զրկուած են ապրում։

Բծաւոր տիֆը շատ հազիւ է պատահում ամառը, և սովորաբար սկսում է աշնանը և զարգանում ձմեռը, իսկ շատ տաք երկիրներում նա ընդհանրապէս աւելի լեռնային տեղերում է պատահում։ Այսպիսով կարելի է ասել, որ բծաւոր տիֆը յատուկ է ցուրտ և բարեխառն երկիրներին։

Ինչու ընդհանրապէս ամառը բծաւոր տիֆի համաճարակներ չեն լինում. հաւանօրէն կարելի է բացատրել նրանով, որ ամառը ոջիլ էլ շատ քիչ է լինում, մարդիկ աւելի թեթեւ են հագնւում և աւելի մաքուր պահում իրենց մարմինն ու շորերը։ Բծաւոր տիֆով հիւանդանում են գլխաւորապէս 15—30 տարեկան հասակում, այլ կերպ ասած, ջահէլները, բայց նրանք աւելի հեշտութեամբ էլ բժշկւում են, մինչդեռ հասակաւորների համար ընդհակառակն է։

Իսկ սեռը դրականապէս նշանակութիւն չունի։ Ճիշտ է տղամարդիկ աւելի են հիւանդանում, բայց դրա պատճառը միանգամայն այլ է։ Իսկ այնտեղ, որտեղ կինը տղամարդու հետ հաւասար աշխատում է, բծաւոր տիֆը բնաւ չի հարցնում, թէ սա բժիշկ է, թէ բժշկուհի, ֆելդշէր, ֆէլդշէրուհի, գթութեան քոյր կամ հիւանդապահ։

Մսավաճառները և կաշուեգործները շատ սակաւ են հիւանդանում բծաւոր տիֆով։ Բծաւոր տիֆի տհաւոր պատկերը, նրա աւերածութիւնները տեսնելուց յետոյ բնաւ տարօրինակ չը պիտի համարել այն սխալ կարծիքը, որ կազմուեց ոչ միայն ամբոխի, այլև շատ գիտնականների մէջ բծաւոր տիֆի վարակման բնոյթի մասին, որ նա տարածւում է ոչ միայն ոջլի, լուի, մլաքի, մոծակի և այլ միջատների, այլ և օդի միջոցով։ Այսպիսով բաւական է միայն հիւանդի սենեակը մուտք գործել, կամ նրան տեղափոխած կառքը նստել, և վարակուեցիր արդէն։ Օդի միջոցով վարակուելը ընդունում էին մասամբ էլ նրանով, որ այդ հիւանդութեան ժամանակ շատ անգամ միանում են կոկորդի և թոքերի հիւանդութիւնները։

Սակայն հանգամանօրէն կատարած գիտնական փորձերը եկան ապացուցելու, որ բծաւոր տիֆի վարակման և տարածման ամենագլխաւոր միջոցը գրեթէ բացառապէս ոջիլ կոչուած միջատն է, որ մեզ ամենից տարաբախտաբար քաջ ծանօթ է։

Միջատների—լուի, մոծակի և մլաքի կատարած դերը վարակման խնդրում աւելի շատ պատահականութեան կարելի է վերագրել։ Յիրաւի, եթէ յիշած միջատները, չը հաշուած ոջիլը, տարածելու լինէին բծաւոր տիֆը, այն ժամանակ ամառը, մանաւանդ տաք և խոնաւ երկրներում, մեծ չափերով պիտի տարածուէր բծաւոր տիֆը։ Բացի այդ հարուստ դասակարգն էլ այնքան զերծ չպիտի մնար այս հիւանդութեան ճանկերից, որովհետև թէև հարուստը շատ աւելի լաւ պայմաններում է ապրում, բայց գրեթէ նոյն չափով ենթարկուած է նա լուերի, մոծակների և մլաքների խոշտանգումներին, որքան և աղքատը։

Խնդիրն այն է, որ բծաւոր տիֆի թոյնը գտնւում է հիւանդի արեան մէջ, հետեւապէս և ամեն մի խածնող միջատ պիտի պատուաստէր այդ թոյնը այն մարդկանց, որոնց բաւականաչափ կարողանում է խածնել։ Այստեղ կայ մի հանգամանք, որ խնդիրը պարզում է մեզ համար, այդ այն է, որ ոջլի մարմնի մէջ բծաւոր տիֆի թոյնը պիտի կատարէ որոշ շրջան 5—6 օր, որպէս զի պատրաստ լինի վարակման թոյնը։ Այսպէս են ասում գիտնականները, իսկ գիտնականներին մենք պիտի հաւատանք, թէև նրանք շատ անգամ են համոզել մեզ իրենց փորձերով, մինչև որ մի ուրիշը եկել է այդ համոզումը, հաստատ հաւատը խախտելու և նոր դաւանանք քարոզելու։ Որչափ ինձ յայտնի է, գիտնականներից աւելի շատ զբաղուեց այս խնդրով Նիկօլլը և Մաչուակովսկին։ Վերջինիս այս հարցում Պետտենկոֆերի հետ կարելի է համեմատել։ Որովհետև, ինչպէս վերոյիշեալ գերմանացի պրոֆէսորը բացի միւսների վրայ արած փորձերից, իր վրայ էլ կատարեց կուլ տալով հիւանդների փսխածը, այնպէս էլ Մաչուակովսկին բացի ծովային խոզերի, կապիկների ու մարդկանց վրայ կատարածներից, իւր վրայ էլ փորձեց՝ ներարկելով բծաւոր տիֆով հիւանդի արիւնը և նա հիւանդացաւ բծաւոր տիֆի նշաններով 18-րդ օրը։

Բծաւոր տիֆով հիւանդների վրայից վերցրած լուերից չը հիւանդացան ոչ կապիկները, ոչ ծովային խոզերը և ոչ էլ մարդիկ, որոնց ենթարկեց նա այդ լուերի խոշտանգումներին, իսկ ոջիլները առաջ բերին բծաւոր տիֆ 5—6 օրից յետոյ։ Վարակման խնդրում դեր է խաղում գլխաւորապէս շորի ոջիլը, որի մարմնի մէջ բծաւոր տիֆի թոյնը մնում է մօտաւորապէս մի շաբաթ, իսկ գլխի ոջլի մէջ մնում է մօտ մի օր։ Վարակուելու համար անհրաժեշտ չէ անպատճառ ոջլի կծելը, բաւական է որ նրա արտաթորութիւնը վնասուած կաշուի միջոցով արեան մէջ անցնի, կամ ոջիլը մարմնի վրայ տրորելով, մարդ ինքն իրեն պատուաստէ։ Ինչպէս որ մի հիւանդի մարմնից թոյնը այս կամ այն միջոցով իր մարմնի վնասուած կաշուի մէջ է մտնում։

Մոռացայ ասել, որ բծաւոր տիֆի թոյնը անցնում է ոջլի ձագի մէջ։ Պատահել են հիւանդութեան դէպքեր, երբ նկատի են ունեցել ոջլի կծելը և հիւանդացել կծած օրից 11 օր անց։ Իմ

ծանօթ բժիշկներից մէկը (Մասլովսկի), որ հիւանդացել էր բծաւոր տիֆով, պատմեց, որ նա հիւանդացաւ 12 օր յետոյ սկսած այն օրից, երբ ոջիլը կծել է նրա ծոծրակը։

Միանգամայն մի կողմ եմ թողնում բուն բժշկական մասը, այսինքն թէ ինչ նշաններ, ինչ բնոյթ և բարդութիւններ ունի այս հիւանդութիւնը, կամ ինչպէս պիտի բժշկել նրան, ա) որ պրոֆաններին հազիւ թէ այդ որևէ ծառայութիւն մատուցանի և բ) որ գլխաւորն է՝ մեր մամուլը այնպէս է երևս դարձնում գիտական յօդուածներից և այնպէս եռանդով կրճատում նրանց, որ դառն փորձերը մեզ սովորեցրել են՝ խնայել ժամանակը՝ աւելի ուրիշ նպատակների համար։

Անհրաժեշտ է սակայն գէթ մի քանի խօսք այն մասին, թէ ինչպէս կարելի է պաշտպանուել այս ահաւոր թշնամուց։

Ամենից առաջ չը պիտի մոռանալ, որ բծաւոր տիֆից առողջացած հիւանդը դեռ ևս կարող է 15—16 օրուայ ընթացքում վարակման պատճառ դառնալ, այնպէս որ հարկաւոր է այս հանգամանքը ուշադրութեան առնել։ Մնացածը հեշտ է, առողջապահօրէն ապրել և անխնայ կոտորել ոջիլներին։

Պիտի ասեմ, որ ով չի կռւում ճանճերի և ոջիլների դէմ, նա չի կռւում չարութեան դէմ։ Շատերը գիտեն, թէ քանի տեսակ հիւանդութիւնների տարածման պատճառ են դառնում ճանճերը և ինչպիսի ահռելի թուերով են բազմանում այս զզուելի միջատները։ Այս րոպէիս էլ նրանց դէմ կռուելով եմ գրում այս տողերը, չը նայելով՝ այնքան եմ շաղ տուել սենեակիս մէջ Մալինինի հեղուկը, որ աչքերս կսկծում են։ Պակաս թուերով չեն բազմանում և ոջիլները. մի էգ ոջիլը օրական 80 ձու է ածում, որոնցից 3—4 օրուայ ընթացքում պատրաստ է արդէն այն թեաւոր փոքրիկ և զզուելի գազանը, որից պաշտպանուելը աւելի դժուար է, քան աւազակներից։ Պարապ մարդիկ հաշուել են, որ մի ճանճը մի շաբաթուայ ընթացքում կարող է 5 հազար իւր նմանները ստեղծել. դրան ես հաւատում եմ։

Ոջիլների մասսայական ջարդի համար անվտանգ միջոցներից կարելի է յիշել բնակարաններում ծծումբ ծխելը և Մալինինի հեղուկ սրսկելը։ Իսկ սպիտակեղէնի համար յարմար է եռացնելը և հարթուկ տալը։ Ոջիլը չի սիրում նաւթի, բևեկնի իւղի (скипидаръ), կինամոնի և անիսի իւղերի հոտը։

Աւելորդ է նոյն իսկ ասել, որ բծաւոր տիֆով հիւանդ խնամողը շատ զգոյշ պիտի լինի միջատներից և ամենաչնչին կասկածի դէպքում լաւ լողանայ և շորերը փոխէ։ Բծաւոր տիֆով հիւանդացողը կարող է ապահով համարել իրեն այդ հիւանդութեան կրկնուելուց։ Ցամենայն դէպս նա աւելի դժուարութեամբ է կրկնւում, քան սկարլատինան և ծաղիկը։ Մի առաւելութիւն ունի բծաւոր տիֆը, որ նա թէև հարուածում է հիւանդին բոլոր ուժով, բայց շուտ էլ անցնում է։ Այս կողմից նա աղիքային տիֆի (брюшной тифъ) հակապատկերն է։

Բժիշկ Աւ. Տէր-Յովհաննիսեան

## ՀԱՅԱՆՊԱՍՏ ՇԱՐԺՈՒՄԸ ԱՆԳԼԻԱՅՈՒՄ

(Մ. ԲԱԼՖՈՒՐԻ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆԸ ՀԱՅԵՐԻ ՄԱՍԻՆ)

Հայերի օգնութեան համար ուղարկուած ամերիկեան կոմիտէի մի պատգամաւորութեան մէջ մստր Բալֆուրը յայտարարել է.

«Օսմանեան կայսրութեան մէջ հայերի վիճակները յայտնի են, բայց սարսափելի է եթէ որ իրենց ամբողջական բնաջնջումը իրագործուած է իրապէս։ Երկու տարի առաջ 1,800,000 հայեր ապրում էին Հայաստանում, դրանից 1,200,000-ը կամ ջարդուած են կամ տարագրուած։ Նրանք, որոնք ջարդուեցին, մեռան անտանելի չարչարանքներով, բայց նրանք «տարագրուածների» երկարատև հոգևարքից ազատուեցին։ Մարդիկ, կիներ և երեխաներ, առանց կերակուրի կամ ճամբորդական ոևէ նախապատրաստութեան, անտարբեր տարիքին, յղնածութեան կամ հիւանդութեան, քշուեցին իրենց բնակարաններից և հեռաւոր վայրեր առաջնորդուելով, խումբ առ խումբ ջարդուեցին։

«Մի մասը մեռան ուժասպառութիւնից կամ ընկան ճամբի կէսին, ոմանք էլ ապրեցին երեք ամսուայ ճամբորդութեան տառապանքը, հասան անապատներ և խեղդուեցին Եփրատի մէջ։ Նրանք այնտեղ—անապատում, լքուած են և մեռնում են այժմ սովից, հիւանդութիւնից կամ խժդժութիւններից։

«Վերջերս մի տեղեկագիր, Ապու-Հորրէրայում մի խումբ վերապրող հայերի մասին էր տեղեկացնում։ Մեծ մասամբ կանայք, երեխաներ և մի քանի մեծեր, որոնք 7 ամբողջ օր անսուաղ էին մնացած։

«Օսմանեան կայսրութեան մէջ թողնուած հայ ցեղի թըշուառ մնացորդները կամ թալանուած կամ հարստահարուած են։ Կանայք և երեխաները բռնութեամբ մահմեդականացուած են։ Հայութեան 1/10-ը միայն կարողացան ճողոպրել թրքական գազանութիւնից, որ հազար ու մի զրկանքներից և նեղութիւններից յետոյ, յաջողեցաւ փախչել սահմանը և ապաստանել Կովկաս կամ Եգիպտոս։

«Այս մերկ իրողութիւնների պատկերը երևան է հանում այն սոսկալի անգթութիւնները, որոնց զոհերն են եղած հայերը։ Թուրքերը պէտք չեն գու՞աւորելու և մեծացնելու իրողութիւնները, նրանք արդէն երևակայութեան սահմաններից անցել են»։

Անգլ. թարգմ. Ա. Սաֆեան

## ՆՈՒԷՐՆԵՐ «ՀԱՄԲԱՒԱԲԵՐ»Ի ՏԱՐԱԾՄԱՆ ՀԱՄԱՐ

Շնորհակալութեամբ ստացանք պ. Կարապետ Շիրինեանից 100 ռ.

—Տէր-Խաչատրեան ամուսիններից Սարգիս Յարութիւնեանի պսակի փոխարէն 26 ռ.։

# Տարեգիր Կ. Հ. Բ. Ընկ.

## ՀԱՅԿ. ԿԵՆՏ. ԿՈՄԻՏԷ

Յուլիսի 31-ին կայացաւ Հ. Կ. Կոմիտէի հերթական նիստը, ուր եղան զեկուցումներ և կայացուեցին հետևեալ որոշումները.

1) պ. Նախագահը զեկուց Դիադինից պ. Ս. Բարալեանից ստացուած հեռագիրը. վերջինս հեռագրում է, որ Ալադաղի քըրդերի ստիպմամբ իրենց 6 գիւղերից հեռացած հայերը ապրում են բաց երկնքի տակ։ Եղանակը ցուրտ է, ըստ որում Կոմիտէն որոշեց ուղարկել այդ շրջանը 500 ական կոմպլէկտ սպիտակեղէն և հագուստ։

2) պ. Նախագահը զեկոյց, որովհետև վերջերս առհասարակ զանազան մթերքների գնումները շատ է դժուարացել, այդ պատճառով ունեցած պաշարը պէտք է խնայողաբար գործադրել. որոշուեց շրջաբերականով հրահանգել բոլոր որբանոցների խնամակալութեանց, որ աշխատեն պաշարները շատ խնայողաբար գործածել։

4) Կոմիտէիս կից կազմուած Երզնկացիների Միութիւնը առանձին գրութեամբ յայտնում է Կոմիտէիս ի գիտութիւն

Միութեան նոր կազմի մասին։ Կոմիտէի կողմից վերահաստատուեց Միութեան կազմը։

Նոյն Միութեան առաջարկութեամբ իրանց անդամ պ. Ա. Մելիքեանը մեկնում է Երզնկա, իրերի կացութեան հետ մօտիկից ծանօթանալու համար, ըստ որում Կոմիտէիս կողմից տրուեց մի յանձնարարական։

## Քրոնիկոն

Թիֆլիսի միջկուսակցական մարմինը որոշել է յետաձգել Ռուսահայոց Համագումարը։

—Թիֆլիսի քաղաքային ընտրութիւնների ժամանակ պարզուեց, որ շատ քաղաքացիներ ընտրատոմս չեն ստացել և շատերի անուններն էլ չի մտած ընտրողների շարքում։

—Ժամանակաւոր Կառավարութիւնը հաստատել է վրաց եկեղեցու անկախութիւնը։

—Վերջին ժամանակներս Թիֆլիսում զգացւում է հացի և ուրիշ կենսամթերքների սուր ճգնաժամ։ Պարենաւորման Կոմիտէն դանդաղ է շարժւում քաղաքի պարենաւորման գործում։

Բանւ. և Զինւ. գործադիր Կոմիտէն որոշել է իր ներկայացուցիչներն ուղարկել Մոսկուայի խորհրդակցութեան։

—Ալէքսանդրապոլից հաղորդում են, սպանուել որ է Դաշնակցական երիտասարդ գործիչ Մ. Բաղրամեանը։

—Ժամանակաւոր Կառավարութիւնը որոշել է Ստոկհոլմի սոցիալիստական խորհրդաժողովի որոշումները պարտադիր չըհամարել։

—Քաղ. դումայի առաջին նիստը մտադրութիւն կար թատրոններից մէկում կայացնելու։ Սակայն գերադասուեց այն կարծիքը, թէ նոր խորհրդակցութիւնը պէտք է կրի զուտ գործնական բնոյթ, ապա ուրեմն պէտք է կայանայ դումայի դահլիճում։ Վերնայարկի մուտքը ժողովրդի համար պէտք է լինի տոմսակներով, որոնք բաժանուած են կուսակցութիւնների միջև՝ համապատասխան նրանց ստացած տեղերի թուի։ Բոլոր տալիք տոմսակները 240 հատ կը լինեն՝ իւրաքանչիւր իրաւասու երկուական տոմսակ։

—Զինուորցուներին ժամանակամիջոց տուող կոմիտէին զինուորական սեկցիայից ներկայացուցիչներ են ընտրուել Կորչեկով, Կարցիվաձէ, Կլիւչով և Նոշկին։

—Ինչպէս հաղորդուեցաւ, նորոգ հանգուցեալ Ե. Յ. Փուղինեանի կտակով քաղաքն ստանում է Պասկևիչ փողոցի տունը 300—400 հազար ռուբլի արժողութեամբ և հանգուցեալի բոլոր դրամագլուխների $1/12$-ականը։ Այդ դրամագլուխների ընդհանուր գումարը դեռ յայտնի չէ, այլ միայն մի բանկում հանգուցեալի հաշուին 500 հազար ռուբլի կայ։ Ի նկատի ունենալով քաղ. վարչութեան գործունէութեան ընդարձակումը նոր դումայի կազմով՝ քաղ. ինքնավարութիւնը վճռել է օգտագործել հանգուցեալի թողած տունը՝ վարչութեան մի քանի բաժանմունքները այնտեղ տեղաւորելով։

## Համաշխարհային պատերազմը

Ռուսաց արեւմտեան ճակատում օգոստոս 2-ի պաշտօնական հաղորդագրութեան համաձայն, ուժեղ հրաձգութիւն է, մասնաւորապէս Վելինակու և Տարնոպոլի ուղղութեան վրայ։

Ռումանական ճակատում յուլիսի 31-ից յամառ կռիւ է տեղի ունենում Օկնա-Գրոզեշտի ուղղութեամբ։ Յուլիսի 30-ին ռումանացիք հակայարձակման դիմելով գրաւեցին Սլոնիկ գիւղը և թշնամուն քշեցին Գրոզեշտի գիւղից 6 վերստ հարաւ-արևմուտք։ Յարձակումները զարգանում են։ Ֆոկշանի ուղղութեամբ թշնամին թնդանօթամարտից յետոյ մի քանի գրոհ է տալիս Սարտոնի-Միրելեշտի գծի վրայ, բոլոր յարձակումները յետ են մղուած։ Թշնամու փորձերը՝ ամրակոծել Մաքսիմենէ գիւղերը, յետ են մղուած։

Հեղինակաւոր աղբիւրներից հաղորդում են, որ ռումանական ճակատի մեր զօրամասերից մէկը գրաւել է Բուլգակուլը և վերցրել 500 գերի, 8 գնդացիր և հրետանի։

Մնացած ճակատների վրայ աչքի զարնող փոփոխութիւն չկայ։

Խմբագիր՝ ՍԱՄՍՈՆ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆ

Հրատ. Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ

## Յայտարարութիւններ



Тип. «СЛОВО» Гимназическая ул. № 1